# ՅԱՌԱՋ

Օ Ր Ա Թ Ե Ր Թ

Հիմնադիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

# HARATCH

Directrice : ARPIK MISSAKIAN

Rédaction - Administration : 32, Rue de Trévise, Paris 9e

Fondé en 1925 Téléph : PRO. 86-60

R. C. Seine 57 A 2731 C. C. P. Paris 15069-82

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Ֆրանսա և Համայնքներ տարեկան, տար. 4000 ֆր.-վեց. 2200

Արտասահման՝ տարեկան 5000 ֆրանք: Հատը 20 ֆր.

ՉՈՐԵՔՇԱԲԹԻ 4 ՓԵՏՐՈՒԱՐ

MERCREDI 4 FÉVRIER 1959

35ՐԴ ՏԱՐԻ — ԹԻՒ 8411 35EME ANNÉE Fondateur : SCHAVARCH MISSAKIAN ՆՈՐ ՇՐՋԱՆ, 15ՐԴ ՏԱՐԻ, ԹԻՒ 4212


ՕՐՈՒԱՆ ԽՈՍՔԸ

## ԱԶԴԱՐԱՐՈՒԹԻՒՆ ՄԸ

[illegible]

ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ

## ՕՐՈՒԱՆ ԴԻՄՔԵՐԸ

## «ՏԵՂ ՏՈՒԷՔ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐՈՒՆ»

×

ՏԵՐԵՐՆ ՈՒ ԱՆՏԱՐՆԵՐԸ

ԹՈՂ. ՀԵՌԱՆԱՆ . . .

[illegible]

## Օրը Օրին

ՅՈՒՇԵՐՈՒ ՇԱՐԱՆԸ

— Բայց՝ երբանք սուրճ մը խմենք . . . նոյնն այ հիւանդանոց կ'երթանք . . . Ցեղենը ինչպէս եղաւ . . .

— Սուրճ որ սառցիր, մի քանի յիշեցի . . . Արանից մի վարտուն տարի առաջ, ես, մի օր, Բաղու էր գնացել մի գոր-ծով . . . ինձ ներկայացրին մի վարժապետ, որը Պոլսից նոր էր ժամանել . . . Մի կարգին հոտառ, ինչպէս որ բոլոր Պոլսեցիները էր լինում . . . Զվլուանեան, սը . . . Մեր էս վարժապետը, մի օր, կուսակցական ժողովում վեր կացաւ թէ «ընկերներ, առանց սուրճի ժողով չի գումարուիր, ամեն քաղաքացուութիւն է եւ աշխատասէր զանգուածների իրաւունքներին դէմ ոտնձգութիւն» . . . Ես վեր կացայ եւ նրան մի լաւ պատասխան . . .

— Սուրճը պաղեցաւ . . . Այս տղուն հիւանդութեան ես չեմ հաւնիր կոր . . . Բասկական լուրջ է . . .

— Մեր գիւղում մի վարդապետ էր եկել մի օր . . . Լաւ եմ յիշում, 1887ին գարնան ամիսներն էին . . . Տղաիկները նոր էին բացուել, բոլորենքս ծլլում էին եւ փողոցներից որ անցնում էր, երեխէքը ցատկում, պարում, երգում էին: Եղ աւտում, ես ու էր արբեցել . . . իմ կնոջ եղբօրը բարերից մի ինչ որ Ֆուռան էր վերցրել . . .

— Բժիշկին հեռանալնեցի . . . Շատ յուսահատեցաւ . . . Շարաբ որ զործողութեան պիտի ընեն արտին վրայ . . . Աստուած հետը ըլլայ, խեղճ տղուն . . .

— Քեզ մի սարօրինակ բան ասեմ . . . Ես շարաբ օրերի մասին մի նախապաշարում ունեմ . . . Դրա պատճառն էլ հետեւեալն է . . . Երբ Օրմում Պանին դէպքը պատահեց . . . Դա էր լինի 1896ին . . . Ես էդ ժամանակ մի գեղեցիկ երիտասարդ էի . . . Որ այգիներով անցնում էի, բոլոր աղջիկերը հիացումներով էին ինձ դիտում ու ես յաւով էի նրանց հաւաքանեմններ . . . «Էս ի՞նչ ապան տղամարդ ա . . .» ինչ որ է, ուզում էի ասել որ էդ դէպքի ժամանակ, ես զտնւում էի Պոլիս եւ այսրում էի Կում Կապու, որտեղ է զտնւում Հայոց պատրիարքարանը . . . Ջմոռանամ, էդ տարին պատրիարքական աթոռում քաղ-մեցրել էին մի . . .

— Զուշանանք . . . Այցելութեան ժամերը 3էն 6 են . . . Հիւանդանոցէն անյ տունը հանդիպինք: Տերուն մայրիկ մը ունի, նայինք ա՞ո ինչպէս է . . .

— Առանձնացում որ ծերուն մայրիկների խօսք է լինում, իմ աչքերիս առաջ է գալիս մի երգերը մայրիկ, որը անունը մնացել է . . . Մի անգամ, 1892ին, եղեղեցի էի գնացել . . . Լաւ եմ յիշում, Զատիկ էր . . . Երբ պատարագը սկսեցաւ, ասում էր «Ատուծու ցէ» եւ զնեց մարդաչքն Աստուծո . . . » ինձ մօտ նստած էր մայրիկը, որին . . .

— Կարծեմ բանի մը կողի քով բոլոր զգուել եւ բանի մը փրանք հաւաքելու ենք՝ բժիշկին ծախերուն համար . . .

— Դու իմացի՞ր ես որ մի ժամանակ ես բժիշկ էր դառնալու . . . Սա մի շատ հետաքրքիր պատմութիւն է . . . Բանեմ, պատմեմ . . . Կոմկասում մենք մի լաւ առողջութիւն ունեինք . . . Երբ զինեցինք ասարաում ես . . .

— Ես վաղը բանի մը բարեկամներու կը դիմեմ . . .

— Մեր լսարանցի կուսնեկիոս վարդապետ 1901ին Շնուեցի սասոսոեան մի բարոզ տուեց եւ բացատրեց բարեկամ բառի իմաստը . . . Ջեմ մոռացել . . . Սաղմուլից մի բնարան վերցրեց . . .

— Դուն ալ բանի մը հարուստներու զրկեէ, զէշ չէս ըներ . . .

— Հարուստ որ ասում ես, յիշում եմ մեր Բասար Պետրոսին, որը 1889ին երբ Կարողիկոսը եղիմշին է զալիս . . .

— Հասկացուեցա՞ւ . . . Դուն հիւանդության երթալու մեաք չունիս: Քայլէ ծնղ Սոմխանին խանութը մտիմ, յուշերդ ա-նոր պատմէ . . .

— Ի՞նչ հիւանդ, սո՛ . . . Ո՞վ է հիւանդացել . . . Բա՛, ինչո՞ւ չէիր ասում . . . Էս Պոլսեցիները ինչքա՞ն յիմար էր, սղ-բեր: Մի ժամ է նստել ես, չես ասում թէ հիւանդանոցում հիւանդ ունենք . . .

— . . .

ԵՒՐՈՊԱՅԻ

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

[illegible]

(Լուրերու շար.ը կարդալ Դ. էջ)



ՅԱՆՅԱՆԻ, Իտալիոյ վարչապետը մերժեց եռ առնել իր հրաժարականը: Տադնապը ծանր է թէ կառավարութեան համար եւ թէ Քրիստոնեայ Ժողովրդավար կուսակցութեան: Ժողովուրդը ընտրութիւններ կը պահանջէ բայց հաւանական կը թուի որ Նախագահ Կրոնքի նախապէս փորձէ դահլիճ մը կազմել:

ԹԵՀՐԱՆԻ մէջ մեծ գաղտնապահութիւն կը տիրէ խորհրդային պատուիրակութեան ներկայութեան վերաբերեալ: Կը կարծուի թէ Պարսկաստան կրնայ ցնոր տնօրինութիւն յետաձգել Ամերիկայի հետ ստորագրելիք համաձայնագիրը: Այս վերջինը արդէն այլեւս շատ շահեկան չէ Պարսիկներուն համար քանի որ Տըլըս չուզեց այդ համաձայնագրին մէջ աւելցնել պարբերութիւն մը որ պարտադրէր Ամերիկայի անմիջական օժանդակութիւն բերել Պարսկաստանի, երբ այս վերջինը յարձակում կրէ որեւէ կողմէ:

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ արեւելեան շրջանին մէջ, Տեպրեցըն, հունգար գիւղացիներ կռիւի բռնուած են ռուս զինուորներու հետ, որոնք կրակ բացած են, երկու գիւղացիներ սպաննուած եւ 15 ուրիշներ վիրաւորուած են:

ՊՈՒՏԱՓԵՇԹԻ մէջ ցարդ գնդակահարուած են 260 հոգի, իրրեւ «պատերազմի ոճրագործ»:

Օր. ԻՐՄԱ ԴԱՒԻԹԵԱՆ
Պ. ՅԱԿՈԲ ՊԱՅՐԱՄԵԱՆ
Նշանուած
1 Փետր. 1959, Փարիզ

× Այս ուրախ առթիւ Տէր եւ Տիկին Հայկ Պայրամեան երկու հազար ֆրանք կը նուիրեն Աղքատախնամին, երկու հազար ֆրանք Ֆ. Կապ. Խաչի կայանին եւ հազար ֆրանք եկեղեցիի կրթական մարմնոյն: Ստանալ «Յառաջ»էն:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Մարսէյլէն Խ. Տէր Նազարէթեան ընտանիքէն հազար ֆրանք Պ. Թեւոս Աւագեանի մահուան առթիւ:

## ՓԵՏՐՈՒԱՐ 18
### ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Ուրբաթ, 20 Փետրուար, ժամը 21ին
Սոսիէթէ Սավանթի մեծ սրահը
Մանրամասնութիւնները յաջորդիւ:

### ՀԱՅ ՆԱԽԿԻՆ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՃԱՇԻՆ

Ընթացքին հանուած նկարները շահագրգռուողներու տրամադրութեան տակն են Միութեան գրասենեակը (32 Րիւ տը Թրէվիզ): Հատը՝ 350 ֆրանք:

### ԽԱՉԻԿ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Խաչիկ Կարապետեանի կսկծալի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի Հայ Մշակոյթի Տան հետեւեալ նուէրները կ'ընեն.— Էմիրզեան ընտանիք (Պրիւսէլ) տասը հազար ֆրանք, Սէֆիքեան ընտանիք (Պրիւսէլ) տասը հազար ֆրանք: (Ստանալ «Յառաջ»էն):

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
### ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ԿՈՂՄԷՆ

Կիրակի, Փետրուար 8, ժամը 15·30ին
կը ներկայացուին՝
ՍԵՊՈՒՀ ՄԻՆԱՍԵԱՆԷՆ — Ադուարդ-Իշխան: Հայաստանի անկախութեան դրուագ մը, Հայ-Մակեդոնական շրջանէն:

COURTELINE - L'ARTICLE 330
ԶԱՒԵՇՏ ՄԷԿ ԱՐԱՐ

ՊԱՐՈՆԵԱՆԻ Մեծապատիւ Մուրացկաններէն տեսարաններ::
Ծիծաղաշարժ միջնարարներ
Սիրով կը հրաւիրուին բոլոր ազգայինները:
Տոմսերը տեղւոյն վրայ:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Եկեղեցիին Վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ Կիրակի օր, Վարդանանց տօնին Ս. պատարագը կը մատուցուի եկեղեցիին մնայուն Քահանայ Տ. Խորսով Ասատուրեանի կողմէ, որ Երուսաղէմէն կը ժամանէ Մարսէյլ, ձեռնարկելու իր պաշտօնին: Օրը ըլլալով նաեւ անուանակոչութեան տօնը Ամենայն Հայոց Կաթողիկոս Վազգէն Ա.ի, պիտի կատարուի Հայրապետական մաղթանք, ինչպէս նաեւ մասնաւոր հոգեհանգիստ համօրէն նորընջեցեալներու յիշատակին: Արարողութիւնները երգչախումբին բազմաձայն երգեցողութեամբ: Ղեկավար երաժշտապետ Պ. Վ. Սարգսեան: Կ'երգուին օրուան յատուկ խմբերգներ:



Imprimé sur les presses du journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

ՀԱՄԱԶԳԱՅԻՆ Մշակութային Ընկերակցութեան Փարիզի Մասնաճիւղը ձեռնարկած է ամսօրեայասուլիսներու շարքի մը, որուն բացումը տեղի պիտի ունենայ թէյասեղանով մը, Փետրուար 7ին, Շաբաթ իրիկուն, ժամը 21ին, 17, Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան սրահին մէջ, ուր խօսք պիտի առնեն ծանօթ մտաւորականներ:

Երեկոյթը պիտի ունենայ նաեւ իր գեղարուեստական բաժինը:

Կը հրաւիրուին Համազգայինի անդամները եւ հայ հասարակութիւնը:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մեծ պարահանդէս, կազմակերպուած Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան կողմէ, 22 Մարտ Կիրակի ժամը 16–24, Սէրքլ Միլիթէրի ընդարձակ սրահը:

ՆԿԱՐՆԵՐՈՒ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ
ՎԱՐԱԶ ՍԱՄՎԵԼԵԱՆ
Փետրուար 2էն 14
Galerie Puget
87. RUE PARADIS, MARSEILLE

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» Ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրուի այս Շաբաթ, ժամը 21ին: Ներկայ կ'ըլլայ Շ. կոմիտէն իր կազմով: Կարեւոր օրակարգ:

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

Փոն տը Շէրիւի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութիւնը կը ծանուցանէ շրջանի եկեղեցասէր Հայութեան, թէ յառաջիկայ Կիրակի տեղւոյս Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ Տ. Վ. քհնյ. Գաբրիէլեան, Լիոնէն:

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes
Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Վարդանանցի առթիւ մասնաւոր պաշտամունք այս կիրակի առաւօտ ժամը 10·45ին, կը խօսին պատուելի ԳԱՅԱՅԵԱՆ եւ վերապատուելի ՍԻՄԼԵԱՆ: Նիւթ «Վարդանը դեռ կը խօսի»:



## ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐԻ ԵՒ ԵՐԳԻ ԲԱՑԱՌԻԿ ՇՔԵՂ ԵՐԵԿՈՅԹ
### ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՄՈՒՐԱՏ – ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

15 Փետրուար, կիրակի իրիկուն ժամը 8·30ին
ՄԻՒԹԻՒԱԼԻԹԷԻ ՄԵԾ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
RUE SAINT-VICTOR, MÉTRO : MAUBERT-MUTUALITÉ
Մասնակցութեամբ ԱՐՄԵՆԻԱ նուագախումբին եւ ՍՕՍԻ պարախումբին

ուին հետեւեալ բաժինները .— Տէրեանի հարազատները, մանկութիւնը, պատանեկութիւնը, ուսումնառութիւնը, ծննդավայրը, գրական գործունէութիւնը, յեղափոխական ու գրական գործունէութիւնը, Տէրեանի ժամանակակիցները :

Իւրաքանչիւր բաժին պիտի բաղկանայ առանձին ենթաբաժիններէ, որոնցմէ ամէն մէկը պիտի պատկերացնէ բանաստեղծի կեանքին ու ստեղծագործութեան տարբեր երեւոյթները :

Թանգարանին մէջ Վահան Տէրեան ներկայացուած է ոչ միայն իբրեւ արուեստագէտ այլ նաեւ որպէս ընկերային գործիչ եւ յեղափոխական :

---

ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ (Ֆրանսա) բացառիկ իրաւունքները վերջ գտան Շաբաթ օր : Վեց ամսուան լիազօրութեան շրջանին կառավարութիւնը 208 հրամանագիր հրատարակած է Հոկտեմբերէն ի վեր, 30 ալ կը հրատարակուին : Միայն Օգոստոսին որոշուեցան հարիւր միլիառի նոր տուրքեր : Ելմտական նախարարութեան մէկ պաշտօնեան յայտարարած է որ եթէ նման որոշումներ առուած ըլլային սովորական ժամանակ դահլիճը քանի անգամ ինկած էր :

---

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Աստղկոււն լոյս կը տեսնէ Հայ-Բոյժի Նոյեմբեր - Դեկտեմբեր թիւը (203-204), ճոխ եւ այլազան բովանդակութեամբ, 48 էջ.—

Մարդոց գիրէն ճանչնալ խլիրդը (ճանաչէր) : Ի՞նչ է պնդերակութիւնը, կանխազգուշութիւն ու դարմանում (Տոքթ. Նաւասարդ), Սեւանի աւազանը (Բ.) : Գէր կիներուն յղութիւնը (Տոքթ. Լոմման) : Խլիրդին ահազանգի նշանները (Փրոֆ. Տիւրուէն) : Ստամոքսի ընդլայնում (Տոքթ. Գալուստեան) : Միս ուտելուն վնասները եւ օգուտները (Տոքթ. Պլոնտէլ) : Օգտագործել մեռելներուն արիւնը (Փրոֆ. Շարիմանեան՝ Երեւանէն) : Եթէ կիները գիտնային (Ս. Նիկողոսեան) : Առամնաբոյժին հասկացքը (Տոքթ. Գեղամ Այվազեան) : Ճարպանիւթի անօթութիւն (Հայ - Բոյժ) : Ինկաւ մարեցաւ (խաչուհի) : Աղիքներուն մէջ ճճի ունի (Տոքթ. Շ. Այվազեան) : Փավլով եւ արդի մարդը (Տոքթ. Պօղոսեան Արշակ) :

× Հայ - Բոյժի բացառիկը, բաժնեգինին վրայ 500 ֆրանք յաւելումով միայն պիտի ղրկուի բաժանորդներուն՝ Փետրուար մէկէն սկսեալ, ինչպէս յայտարարած էինք նախապէս, (Թղթատարական ծախքերու յաւելումը կ'արդարացնէր աւելի կանուխ բարձրացնել գինը) :

× Հայ - Բոյժի համար դրամական ամէն առաքում կատարել Շ. Նարդունիի անուան, միշտ մանդա - քարթով, Յառաջի խմբագրատան հասցէով (գրել՝ ռէտաքսիոն «Յառաջ»,— չենքին դանադան բաժանումներուն պատճառով), բայց երբեք Յառաջի չէք-փոսթալով :

Տարեկան բաժնեգինը ցնոր տրօրինութիւն՝ 1200 ֆրանք, արտասահման 1500 :

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Սեդրակ Եավրուեանի դաշնակի ռեսիթալը յառաջիկայ Մարտ տասնին, Սալ Կավոյի մէջ :

×

«ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ»

Փարիզի մէջ, նախաձեռնութեամբ Հ.Յ.Դ. Ահարոնեան խումբին :

ՄԱՅԻՍ 2ԻՆ

×

Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը Փարիզի շրջանի տասը մասնաճիւղերով կը տօնէ Կապոյտ Խաչի օրը, 12 Ապրիլին, Սորպոնի մեծ ամփիթատրոնին մէջ :

×

Սեբաստիոյ նահանգի Մուրատ Ռուսմնասիրացի գեղարուեստական երեկոյթը Մարտ 22ին :

×

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐԸ

Գեղարուեստական ցերեկոյթ, Սորպոնի մեծ ամփիթատրոնին մէջ, 10 Մայիս 1959

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

Կրընոպլի Կապ. Խաչի «Մանուկներու Օր»ուան հանդէսին առթիւ ի նպաստ իր դպրոցին եղած նուէրներու անուանացանկը : Շնորհակալութիւն բոլորին :

Տէր եւ Տիկին Ալիքեան 3200, Փոքրիկըն Ժօժօ (Օնպաշեան) 2800, Տէր եւ Տիկին Գունտուրաճեան 2400, Օր. Միսլեան 1600, Պ. Զատիկեան 1400, Տէր եւ Տիկին Ճերմակեան 1400, Պ. Վ. Աւագեան, օրիորդ Աւագեան, Տիկին Արապեան, Տիկին Անտոնեան, Տէր եւ Տիկ. Այվազեան հազարական ֆրանք, Տէր եւ Տիկին Քիւրքճեան 1200, Տիկ. Ծիպլիտապեան 900, Տիկին Կարմիրեան 700, Տիկին Ա. Մ[illegible]եան 700, Տէր եւ Տիկին Երամեան, Տէր եւ Տիկին Սիմոնեան, Տիկին Գուլումճեան, Տիկին Տէլալեան, Տէր եւ Տիկին Միքայէլեան, Պ. Թ. Միք[illegible], Տէր եւ Տիկին Ա. Կիւրիւնեան հինգ հարիւրական ֆրանք, Փոքրիկն Յ. Բարախեան չորս հարիւր, Ոմն երեք հարիւր, Պ. Սարգիսեան 250, Տիկին Երկոյեան 200, փոքրիկն Աւաւեան 200, գումար՝ 26.150 ֆրանք :

Հրուշակներու եւ Աստուածամօր հացատները պատրաստուած են Տիկին Այվազեանի կողմէ, Թաղերն ու հրուշակներու թիւերը նուէր՝ Տիկին Միսքճեանի կողմէ :

---

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ ՏԱՐԵԿԱՆ 28ՐԴ ՑԵՐԵԿՈՅԹԸ

Կիրակի 8 Մարտ, 1959, կէսօրէ վերջ ժամը 14.30ին, Սալ տը լա Շիմի : 28պիս, Րիւ Սէն Տօմինիք, Փարիզ (7), Մէթրօ Էնվալիտ :

Սկաուտական յայտագիր, հայկական պարեր եւ երգեր :

Ներկայացում եւ զուարճալիքներ :

Մուտք 300 եւ 500 ֆրանք :



Imprimé sur les presses du journal HARATCH — 17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մեծ պարահանդէս, կազմակերպուած Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան կողմէ, 22 Մարտ Կիրակի ժամը 16-24, Աէրօլ Միլիթէրի ընդարձակ սրահը :

×

Մարտ 28 եւ 29

Լիոն (28), Մարսէյլ (29)

փառատօն, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի :

×

Նոր Սերունդի օրը Պանեօլի մէջ, Մարտ մէկին եւ տարեկան մեծ պարահանդէսը Մայիս 9ին, 6րդ քաղաքապետարանի սրահին մէջ :

---

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի տարեկան ցերեկոյթ պարահանդէսին առթիւ Ֆէստիվիլի օգափութեան կայանին կը նուիրեն.—

Պ. Տէր Յովհաննէսեան երկու հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Զօլաքեան հազար, Տէր եւ Տիկին Թէսիէ հինգ հազար ֆր., Պ. Վ. Ֆրէնկեան տասը հազար ֆրանք, Պ. Գրըճեան հինգ հարիւր ֆրանք :

---

## ՓԵՏՐՈՒԱՐ 18

### ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Ուրբաթ, 20 Փետրուար, ժամը 21ին Սոսիէթէ Սավանթի մեծ սրահը

Մանրամասնութիւնները յաջորդով :

---

ՆԿԱՐՆԵՐՈՒ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

ՎԱՐԱԶ ՍԱՄՎԵԼԵԱՆ

Փետրուար 2էն 14

**Galerie Puget**

87 RUE PARADIS, MARSEILLE

---

### ՎԵՐ. Յ. ՀԵԼՎԱՃԵԱՆԻ ՆՈՐ ՀԱՍՑԷՆ

Կարտարնակ Վեր. Յ. Հելվաճեան Մարսէյլ փոխադրուած ըլլալով որպէս հովիւ Հայ Աւետարանական Մկրտչական Եկեղեցւոյ, արտասահմանի եւ Ֆրանսայի իր բարեկամներէն կը խնդրէ նկատի ունենալ իր նոր հասցէն.—

**Pasteur Arthur HELVADJIAN**

6 Place de la Rotonde, St. Jérôme

MARSEILLE 13e (B de R) Tél. : 62-85-10

### ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏՕՆ

Կազմակերպուած Փարիզի եւ շրջակա – յից Հայց. Առաքելական Եկեղեցւոյ Կրօ– նական Ընկերութեան կողմէ, տեղի պիտի ունենայ 11 Հոկտ. 1959, ժամը երեքին: Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ: Մանրամասնութիւնները յետագային: Նկատի ունենալ այս թուականը:

×

Սարգիս Պօղոսեանի արտասանական ե– րեկոյթը Փարիզի մէջ, Սալ Շոփէն, չո – րեքշաբթի, չորս Մարտ, իրիկուան ժամը 9ին:

### ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Դպրոցասէր Տիկնանց Վարժարանին սա– նուհիներու գեղարուեստական ցերեկոյ – թը Ապրիլ 19ին, Սալ Շօփէնի սրահին մէջ:

### ՆՈՒԷՐ

Պոստոյէն Պ. Գինոսեան իր զաւկին ղինուորութենէ ողջ – առողջ վերադառ – նալուն առթիւ հազարական ֆրանք կը նուիրէ Հանգստեան տան (Մոնմորանսի), Լիոնի Հայոց եկեղեցիին եւ «Յառաջ»ին: (Ստանալ «Յառաջ»էն:

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Յունաստանէն հայրենադարձ Տիկին Ե– ղիսաբեթ Սրապեան կը փնտռէ իր որդին Լեւոն Սրապեանը, ծնած 1910 Թուական– նին, Թուրքիա Աքշէհիր քաղաքը:

Կ'ենթադրուի որ յիշեալը ներկայիս կը բնակի Մարսէյլի մօտ ԼԱՌՈՋ արուար – ձանը: Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել հետեւեալ հասցէին.— Շօ – սիւր Հանրի Ժամկոչեան, 150 բիւ տը Շաթու, Քոլոմպ, Սէն:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս եկեղեց. Թաղականութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները փո – խան ծաղկեպսակի Այրի Տիկին Կիւլի Թամիզեանի մահուան առթիւ:

Պ. Սահակ Թամիզեանէ երեք հազար ֆրանք, Պ. Միսաք Ժամկոչ – եանէ երկու հազար ֆրանք: Այս առթիւ Թաղականութիւնս իր ցաւակցութիւննե – րը կը յայտնէ հանգուցեալին ընտանե – կան պարագաներուն:

### ԳՈՐԾ ԿԸ ՓՆՏՌԷ

Հայ երիտասարդ մը գործ կը փնտռէ հայ հաստատութեան մը մէջ, ամէն կար– գի աշխատանքի համար: Կրնայ գիշերել նաեւ իր աշխատանքի վայրը:

Դիմել Յառաջի վարչութեան:

## ՓԵՏՐՈՒԱՐ 19Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ

Ուրբաթ, Փետրուար 20, ժամը 21ին

SOCIÉTÉS SAVANTESի ՄԵԾ ՍՐԱՀԸ

8, RUE DANTON

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ՝ ԸՆԿԵՐՈՒՀԻ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

ԸՆԿ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ ԵՒ ՎԻԳԷՆ ԹՈՐՈՍԵԱՆ

*Նոր Սերունդի կողմէ*

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ ԱՐՏԱՇԷՍ ԳՄԲԷԹԵԱՆ, ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ: ՍԵԴԱ ԹՈՐՈՍԵԱՆ, Ժ. ԱԶԸՔԿԷՕԶԵԱՆ եւ Օր. ԴԱՆԻԷԼԵԱՆ

*Ծախքերու մասնակցութիւն 100 ֆրանք*

### ՓԱՐԻԶԻ Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ-ՄԿՐՏԻՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ

### ԺԱՄԵՐԳՈՒԹԵԱՆ ՊԱՇՏՕՆՆԵՐ

13 Փետրուար Ուրբաթ ժամը չորսին Տեառնընդառաջի նախատօնակ եւ ճրագա– լուցութիւն:

14 Փետրուար Շաբաթ օր ժամը 10ին Ս. պատարագ, Տօն Տեառնընդառաջի:

Մեծ պահքի առթիւ Արեւագալի արա – րողութիւն, պիտի կատարուի ամէն կի – րակի յաւարտ պատարագի Փետրուար 15 Կիրակիէն սկսեալ ժամը 11ին: Հոգեհան– գիստները կը կատարուին ժամը 10.30ին: Սիրով կը հրաւիրուի հասարակութիւ – նը:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՊԱՏԱՐԱԳ

Շաւիլի եկեղեցւոյ յառաջիկայ պատա– րագը՝ Կիրակի 22 Փետրուարին:



Imprimé sur les presses du journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Փարիզի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբին, այս Կիրակի ժամը 16էն 22, Ազգ. Տան մէջ, 32 րիւ տը Թրէվիզ:

Հաճելի մթնոլորտ:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմի – տէի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21– ին, սովորական հաւաքատեղին:

ԱՆԻԷՌ – ՊՈՒԱ ՔՈԼՈՄԲ.— Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէի եւ «Ռ. Միսաք– եան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժա– մը 21ին, ծանօթ հաւաքատեղին:

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէի ընդ– հանուր անդամական ժողովը այս Շաբաթ երեկոյեան ժամը 20.30ին, մեր ակում – բին մէջ: Բոլոր ընկերներու ներկայու – թիւնը անհրաժեշտ է:

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Շաբաթ կէսօրէ վերջ ժամը չորսին, Քաֆէ լը Րէժանի մէջ: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկե – րուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՏԱՐՕՆ – ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ Հայր. Մի– ութեան ժողովը այս Կիրակի, ժամը չոր– սին, Քաֆէ Քլէր տը Լիւն (Փլաս տ'Ի– թալի): Օրակարգ՝ վարչութեան ընտրու– թիւն եւ զանազան հարցեր:

ՖՐԱՆՍԱԿԱՆ աղբիւրներէ կը հաստատուի որ 150 ֆելլականներ սպաննուեցան անցեալ օր Թունուզ – Ալժերիա սահմանին վրայ երբ կը փորձէին Ալժերիա մտնել ըմբոստներուն օգնելու համար: Թունուզէն արտաքսուեցաւ ֆրանսական ձայնասփիւռին թղթակիցը՝ Ժան Լը Կեւէլ:

ՊՈՒՐԿԻՊԱ յայտարարեց թէ կ՚ուզէ Տը Կոլի հետ տեսնուիլ: Թունուզի հանրապետութեան նախագահը շեշտեց նաեւ թէ միշտ մաղթած է ֆրանքեւթունուզեան զինուորական գործակցութիւն մը:

ԻՏԱԼԻՈՅ նախկին թագուհին յայտարարեց թէ թոյլ պիտի չտայ որ իր աղջիկը իշխանուհի Մառիա – Կապրիէլլա ամուսնանայ Պարսից Շահին հետ: Թագուհին եւ իտալական շրջանակները դէմ են նման ամուսնութեան, իսկ թագաւորը շատ դժուար կացութեան մատնուած է.— Մէկ կողմէն չի կրնար իր աղջիկը մահմետականի մը տալ, միւս կողմէ դժուար է կայսր մը մերժել. գլխաւոր դժուարութիւնը տարիքի մեծ տարբերութենէն զատ, կրօնական է: Կաթողիկէ իշխանուհի մը չի կրնար իսլամ դառնալ, իսկ Պարսից Շահին կինն ալ չի կրնար մահմետական չըլլալ: Թեհրանի շրջանակները սակայն լաւատես են եւ կը յայտնեն թէ բանակցութիւնները լաւ ճամբու մէջ են:

ՊՈՐԻՍ ՓԱՍԹԵՐՆԱՔ որոշեց այլեւս ոչ մէկ լրագրող ընդունիլ: Արդարեւ վերջերս անգլիական թերթերու թղթակիցներ տեսակցութիւններ ունեցած էին եւ անոնցմէ մէկը՝ Պրաուն (Տէյլի Մէյլ) մամուլին յանձնած էր իր տպաւորութիւնները եւ բանաստեղծութիւն մը (տես՝ Գ. էջ): Փասթերնաք կ՚ըսէ որ այդ բանաստեղծութիւնը հրապարակուելու չէր սահմանուած այլ պիտի յանձնուէր Տիկ. բոյարթի, նուէր՝ հեղինակին կողմէ:

ՍԹՈՔՀՈԼՄԷՆ կը հաղորդեն թէ Անաստաս Միկոյեանի օդանաւը որ արկած ունեցաւ պարզապէս շարժակի խանգարում մը ունեցած է: Կատարուած քննութիւնները կը հաստատեն թէ գիտումնաւոր ոչ մէկ արարք կար:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ՕՐ»Ը
Առնուվիլի մէջ
ՄԱՐՏ 15ԻՆ

# ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ

Ուրբաթ, Փետրուար 20, ժամը 21ին

SOCIÉTÉS SAVANTESի ՄԵԾ ՍՐԱՀԸ
8, RUE DANTON

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ՝ ԸՆԿԵՐՈՒՀԻ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

ԸՆԿ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ ԵՒ ՎԻԳԷՆ ԹՈՐՈՍԵԱՆ
Նոր Սերունդի կողմէ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ ԱՐՏԱՇԷՍ ԴՄԲԷԹԵԱՆ, ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ: ՍԵԴԱ ԹՈՐՈՍԵԱՆ, Ժ. ԱԶԸՔԿԷՕԶԵԱՆ եւ Օր. ԴԱՆԻԷԼԵԱՆ

Տախքերու մասնակցութիւն 100 ֆրանք

Ալֆորվիլէն օթոքառը կը մեկնի ժամը 8·30ին, Փլաս Քառնոյէն:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կը տօնուի մեծ պատրաստութեամբ Գոմոնի մէջ, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէին, նախաձեռնութեամբ «Զաւարեան» ենթակոմիտէի, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Յառաջ», «Վարանդեան», «Իշխան», խումբերու: Գոմոնի Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբին:

ՓԵՏՐՈՒԱՐ 21, ՇԱԲԱԹ, ԺԱՄԸ 21ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

Գեղարուեստական ճոխ յայտագիր, մասնակցութեամբ ծանօթ արուեստագէտներու, Գոմոնի, Սէն Լուի եւ Կարդաննի Նոր Սերունդի պարախումբերուն եւ նուագախումբերուն:

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՅԱՐ. ԱՂԱՅԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. ԱՍ. ՔԷՕՍԷԵԱՆ

ԽՕՍՆԱԿ ԸՆԿ. ՍԵՐԺ ՍԱՐԳԻՍԵԱՆ

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

## ՄԱՐՍԷՅԼ

ԱՐԾԻՒ ՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետր. 21, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս, Ալհամպրայի շքեղ սրահին մէջ:

Մասնակցութեամբ ծանօթ դեկավար ՔԼՈՏ ՊԷՍԷԻ, իր մեծ նուագախումբով: Ռատիօ Մոնթէ Քարլոյի եւ Անիմաթէօր ԷՏՄՈՌՆ ԹԱՅԷԻ:

Աթրաքսիոն, անակնկալներ եւ գոթիյոն խնամուած պիւֆէ:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Վարչութեան ժողովը պիտի գումարուի այս Երեքշաբթի, ժամը 18·30ին, Մշակոյթի Տան մէջ: Կը խնդրուի ներկայ ըլլալ:

## ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵՆԷՆ ԹՈՇԱԿԻ ՅԱՏԿԱՑՈՒՄ ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՄԷՋ

ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ ազնուամեծար վարիչները Մուրատեան վարժարանի տեսչութեան առաջարկին ընդառաջ երթալով որոշած են 1959 – 1960ի դպրոցական տարեշրջանէն սկսեալ հինգ սան պահել հետեւեալ պայմաններով:

1.— Պատանին (11 – 12 տարեկան) պէտք է ըլլայ հայ չքաւոր ընտանիքի զաւակ, ուշիմ, աշխատասէր եւ բարեկիրթ:

2.— Զարգացումը պէտք է համապատասխանէ ֆրանսական երկրորդական վարժարանի վեցերորդ դասարանին:

3.— Թեկնածու չեն կրնար ըլլալ արդէն իսկ վարժարանս յաճախող աշակերտները:

4.— Սան մը որ չկարենայ անցնել տարեվերջի քննութիւնները կը կորսնցնէ ամէն իրաւունք:

5.— Ընտրութիւնները պիտի կատարուին վարժարանիս մէջ մրցումով եւ քննութեամբ, որ տեղի պիտի ունենայ յառաջիկայ Մայիս 18էն 24 օրերու ընթացքին, ժամը 15 – 17ին:

Կը պահանջուին դպրոցական վկայականներ:

Գրել Տեսչութեան.—

DIRECTION DU COLLÈGE ARMÉNIEN
26, RUE TROYON, SÈVRES - S. & O.

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի ժամը 9ին Քաֆէ Քատէի սրահը:

Կը խօսի ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ:

Նիւթ՝ «Հայկական հարցը վերջին քառասնամեակին»: Մուտքը ազատ է:

## Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Հովանաւորութեամբ Տիկ. Ա. ՓԱՇԱ ՆՈՒՊԱՐԻ եւ ԿՈՄՍ Տ'ԱՐՍՔՕԹԻ

ԿԻՐԱԿԻ, ՓԵՏՐՈՒԱՐ 22ԻՆ, ԺԱՄԸ 17ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ

HOTEL GEORGE V

Միջազգային «Աթրաքսիոններ» անակնկալներ, ձրի «գոթիյոն»

ԽՆԱՄՈՒԱԾ ՊԻՒՖԷ ԵՒ ՊԱՌ — ՆԱԽՈՐԴ ՏԱՐՈՒԱՆ ԳԻՆԵՐՈՎ

Սեղաններու համար դիմել՝

Union Générale Arménienne de Bienfaisance — 11, Square Alboni, Paris (16e)

TÉLÉPHONE : TRO. 03-18

Մինչեւ ժամը 19ը չգրաւուած սեղանները ազատ կը նկատուին, «Աթրաքսիոն»ները կը սկսին ժամը 19·45ին:



## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Ֆ. Կ. Խաչի Կեդր. Վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է ողբ. Խաչիկ Կարապետեանի մահուան առթիւ օգտի. կայանին ի նպաստ, Տէր եւ Տիկ. Անդրանիկ Կազարեանէ (Պրիւսէլ) չորս հազար ֆրանք:

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տիկին Սիրանոյշ Զաքրեան, իր ամուսնոյն Գէորգ Զաքրեանի յիշատակին հազար ֆրանք կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման:

Տիկին Ռօզ Հանըմեան, իր ամուսնոյն Արտաւազդ Հանըմեանի յիշատակին՝ երկու հազար ֆրանք կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղին:



Imprimé sur les presses du journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Եղիս Ալիքսանեան եւ ըն–տանեկան պարագաները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կա–տարուի այս Կիրակի առաւօտ, ժամը 10·30ին, Փարիզի Ս· Յովհ· Մկրտիչ ե–կեղեցին իրենց ամուսնոյն եւ ազգականին

ՄԻՀՐԴԱՏ ԱԼԻՔՍԱՆԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

Թէյասեղան ի պատիւ

Կ· ՓՕԼԱՏԵԱՆԻ

Նոր լոյս ընծայած իր «Արծիւները Ա–նապատին մէջ» վէպին առթիւ :

Այս Շաբաթ, ժամը 21ին, Քաղէի սը–րահին մէջ (մէթրօ Քատէ) :

Խօսք պիտի առնեն բազմաթիւ գրող–ներ : Երգ եւ արտասանութիւն :

Ծախքերու մասնակցութիւն :

Կը հրաւիրուին Միութեանս անդամնե–րըն ու գրասէր հասարակութիւնը :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Ալֆորվիլի Երիտ· Միութեան կողմէ, հովանաւորութեամբ Ս· Պօղոս Պետրոս եկեղեցւոյ հոգաբար–ձութեան :

Շաբաթ, Մարտ 28, ժամը 20·30ին, Մէզօն Ալֆորի քաղաքապետարանի սը–րահը : Կը ներկայացուի՝

« ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ »

Մանրամասնութիւնները յաջորդով :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

ՓԱՐԻԶԱՀԱՅ

ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ

## ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԱՐՄՆԻՆ

Կազմակերպած

ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍԸ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, ՄԱՐՏ 12ԻՆ

ժամը 14·30էն 18·30

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՊԱՏԱՐԱԳ

Շաւիլի եկեղեցւոյ յառաջիկայ պատա–րագը՝ Կիրակի 22 Փետրուարին :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

1959 ԱՊՐԻԼ 26ԻՆ

ՍՈՐՊՈՆԻ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ· Յ· Դ· ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ՕՐ»Ը

Առնուվիլի մէջ

ՄԱՐՏ 15ԻՆ

×

Թոքաթի Հայր· եւ Րոնի սու Պուայի միացեալ հանդէսը 4 Ապրիլ, Շաբաթ գի–շեր :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆



# ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ· Յ· Դ· ՇՐՋ· ԿՈՄԻՏԷԻՆ

Ուրբաթ, Փետրուար 20, ժամը 21ին

SOCIÉTÉS SAVANTESԻ ՄԵԾ ՍՐԱՀԸ

8, RUE DANTON

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ՝ ԸՆԿԵՐՈՒՀԻ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

ԸՆԿ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ ԵՒ ՎԻԳԷՆ ԹՈՐՈՍԵԱՆ

Նոր Սերունդի կողմէ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ ԱՐՏԱՇԷՍ ԳՄԲԷԹԵԱՆ, ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ : ՍԵԴԱ ԹՈՐՈՍԵԱՆ, Ժ· ԱԶԸՔԿԷՕԶԵԱՆ, Օր· ԴԱՆԻԷԼԵԱՆ եւ Կ· ԱՓՐԻԿԵԱՆ

Ծախքերու մասնակցութիւն 100 ֆրանք

Ալֆորվիլէն օթոքառը կը մեկնի ժամը 8·30ին, փլաս Քառնոյէն :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կը տօնուի մեծ պատրաստութեամբ Պոմոնի մէջ, հովանաւորութեամբ Հ· Յ· Դ· Մարսէյլի Շրջ· կոմիտէին, նախաձեռնութեամբ «Զաւարեան» ենթակոմիտէի, մասնակցութեամբ Հ· Յ· Դ· «Յառաջ», «Վարանդեան», «Իշխան», խումբերու : Պոմոնի Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբին :

ՓԵՏՐՈՒԱՐ 21, ՇԱԲԱԹ, ԺԱՄԸ 21ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

Գեղարուեստական ճոխ յայտագիր, մասնակցութեամբ ծանօթ արուեստա–գէտներու, Պոմոնի, Սէն Լուի եւ Կարդանի Նոր Սերունդի պարախումբերուն եւ նուագախումբերուն :

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՅԱՐ. ԱՂԱՅԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. ԱՍ. ՔԷՕՍԷԵԱՆ

ԽՕՍՆԱԿ ԸՆԿ. ՍԵՐԺ ՍԱՐԳԻՍԵԱՆ

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ :

×

Հ· Յ· Դ· Մարսէյլի Քրիստափոր ենթա կոմիտէն կազմակերպած է ընկերահա–մակրական խնջոյք (գինեձօն) մը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին «Ահա–րոնեան» սրահին մէջ : Հովանաւորութեամբ Շրջ· Կոմիտէի :

Կը հրաւիրենք ընկերները եւ համակիրներ իրենց ընտանիքով :

Մուտքը ազատ է

### ՍԷՆ ԼՈՒԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ· Յ· Դ· Ակնունի ենթակոմիտէին, հովանաւորութեամբ Շրջ· Կոմիտէի եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի Սիամանթօ խումբին, այս Շաբաթ իրիկուն ժամը 22ին, Ս· Գէորգ եկեղեցւոյ կից սրահը : Մուտքը ազատ է

## ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Փետրուար 28ին, Ահարոնեան Ակումբին մէջ :

## Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Հովանաւորութեամբ ՏԻԿ· Ա· ՓԱՇԱ ՆՈՒՊԱՐԻ եւ ԿՈՄՍ Տ'ԱՐՍՔՕԹԻ

ԿԻՐԱԿԻ, ՓԵՏՐՈՒԱՐ 22ԻՆ, ԺԱՄԸ 17ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ

HOTEL GEORGE V

Միջազգային «Աթրաքսիոններ» անակնկալներ, ձրի «ղօթիյօն»

ԽՆԱՄՈՒԱԾ ՊԻՒՖԷ ԵՒ ՊԱՌ — ՆԱԽՈՐԴ ՏԱՐՈՒԱՆ ԳԻՆԵՐՈՎ

Սեղաններու համար դիմել՝

Union Générale Arménienne de Bienfaisance — 11, Square Alboni, Paris (16e)

TÉLÉPHONE : TRO. 03-18

Մինչեւ ժամը 19ը չգրաւուած սեղանները ազատ կը նկատուին, «Աթրաքսիոն»–ները կը սկսին ժամը 19·45ին :



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ· Յ· Դ· Շրջ· Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ՝ «Արամ» խումբը, այս Կիրակի առաւօտեան ժամը 9·30ին : Բոլոր ընկերներուն ներկայութիւնը սահ–պողական է : Կարեւոր օրակարգ : Ներկայ կ'ըլլայ Շրջ· Կոմիտէն իր կազմով :

ՎԱԼԱՆՍ.— Հ· Յ· Դ· Շրջ· Կոմիտէի ընդհ· ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30–ին, Քաֆէ Լիոնի վերնայարկը : Խիստ կարեւոր օրակարգ : Ընկերներուն ներկա–յութիւնը պարտաւորիչ է :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՄԵԾ ԵՒ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ· Յ· Դ· Նոր Սե–րունդի «Սիամանթօ» խումբին կողմէ :

Այս Շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ, «Պէրին Միյէ»ի շքեղ սրահներուն մէջ :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Պիտի ըլլան երգեր, մեներգներ, խըմ–բերգներ, ժողովրդային խմբական պա–րեր եւ ուրիշ շարք մը հաճելի եւ սիրուն անակնկալներ :

Այլազան տեսակով ճոխ պիւֆէ, մատ–չելի գիներով :

ԸՆՏԻՐ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ՝

ՄԱՍԷԼ ԼՈՒՎԻՐԷ

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՄԱՐՍԷՅԼ

ԱՐԾԻՒ ՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ

ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետր· 21, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս, Ալհամպրայի շքեղ սրահին մէջ :

Մասնակցութեամբ ծանօթ ղեկավար ՔԼՈՏ ՊԷՍԷԼ, իր մեծ նուագախումբով : Ռատիօ Մոնթէ Քարլոյի եւ Անիմաթէօր ԷՏՄՈՌՆ ԹԱՅԷԼ :

Աթրաքսիոն, անակնկալներ եւ ղօթիյօն խնամուած պիւֆէ :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ ՏԱՐԵԿԱՆ 28ՐԴ ՑԵՐԵԿՈՅԹԸ

Կիրակի 8 Մարտ, 1959, կէսօրէ վերջ ժամը 14·30ին, Սալ տը լա Շիմի : 28պիս, Րիւ Սէն Տօմինիք, Փարիզ (7), Մէթրօ Էնվալիտ :

Սկաուտական յայտագիր, հայկական պարեր եւ երգեր :

Ներկայացում եւ զուարճալիքներ :

Մուտք 300 եւ 500 ֆրանք :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

## ԾԱԽՈՒ ԽԱՆՈՒԹ

Լիոնի մէջ, բանուկ պողոտայի վրայ 20 տարուան լաւ յաճախորդներով կօշիկի խանութ մը :(Զափի վրայ նաեւ նորոգու–թեան գիւրութիւն) բոլոր գործիքներով : բնակարան Ա· յարկի վրայ լաւ սենեակ–ներով : Նպաստաւոր գին :

Հեռաձայնել 60 – 30 – 47 :



Imprimé sur les presses du journal HARATCH

17, Rue Bleue, 17 — PARIS (9e)







# ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կը տօնուի մեծ պատրաստութեամբ Գոմոնի մէջ, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէին, նախաձեռնութեամբ «Զաւարեան» ենթակոմիտէի, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Յառաջ», «Վարանդեան», «Իշխան», խումբերու։ Գոմոնի Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբին։

ՓԵՏՐՈՒԱՐ 21, ՇԱԲԱԹ, ԺԱՄԸ 21էն ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՅԱՐ. ԱՂԱՅԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. ԱՍ. ՔԷՕՍԷԵԱՆ

ԽՕՍՆԱԿ ԸՆԿ. ՍԵՐԺ ՍԱՐԳԻՍԵԱՆ

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

×

Հ. Յ. Դ. Մարսէյլի Քրիստափոր ենթակոմիտէն կազմակերպած է ընկերահա–մակրական խնջոյք (դինեճօն) մը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին «Անհա–րոնեան» սրահին մէջ։ Հովանաւորութեա մբ Շրջ. Կոմիտէի։

### ՍԷՆ ԼՈՒԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ակնունի ենթակոմիտէին, հովանաւորութեամբ Շրջ. Կոմիտէի եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի Սիամանթօ խումբին, այս Շաբաթ իրիկուն ժամը 22ին, Ս. Գէորգ եկեղեցւոյ կից սրահը։ Մուտքը ազատ է

## Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Հովանաւորութեամբ ՏԻԿ. Ա. ՓԱՇԱ ՆՈՒ ՊԱՐԻ եւ ԿՈՄՍ Տ'ԱՐՍՔՕԹԻ

ԿԻՐԱԿԻ, ՓԵՏՐՈՒԱՐ 22ԻՆ, ԺԱՄԸ 17էն ԿԷՍ ԳԻՇԵՐ

HOTEL GEORGE V

Միջազգային «Աթրաքսիոններ» անակնկալներ, ձրի «գօթիյօն»

ԽՆԱՄՈՒԱԾ ՊԻՒՖԷ ԵՒ ՊԱՌ ՆԱԽՈՐԴ ՏԱՐՈՒԱՆ ԳԻՆԵՐՈՎ

---

Այրի Տիկին Խնկենի Աւետիքեան եւ զաւակները՝ Անահիտ եւ Լեւոն, Լեւոն եւ Յովհաննէս Աւետիքեան ընտանիքները եւ զաւակները խոր կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ հօրեղբօր՝

ՎԱՀԱՆ ԱՒԵՏԻՔԵԱՆԻ

մահը որ տեղի ունեցաւ 18 Փետրուար, 1959։

Յուղարկաւորութիւնը այսօր Շաբաթ առաւօտ, ժամը 9ին Կաղէռի եկեղեցիին մէջ։

---

Տէր եւ Տիկին Տրդատ Նշանեան, Պեր–ճուհի Խանցեան (Ամերիկա), խոր կսկի–ծով կը ծանուցանեն դառնաղէտ մահը ի–րենց եղբօր եւ տալրոջ՝

ՌՈՒԲԷՆ ՆՇԱՆԵԱՆԻ

որ տեղի ունեցաւ 19 Փետրուար, հինգ–շաբթի Թընօնի հիւանդանոցին մէջ, յետ երկարատեւ հիւանդութեան։

Յուղարկաւորութեան տխուր արարո–ղութիւնը տեղի պիտի ունենայ այսօր Շա–բաթ, ժամը 16·30ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, 15 Րիւժան Կու–ժօն։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։

---

### ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

Թէյասեղան ի պատիւ

Կ. ՓՕԼԱՏԵԱՆԻ

Նոր լոյս ընծայած իր «Արծիւները Ա–նապատին մէջ» վէպին առթիւ։

Այս Շաբաթ, ժամը 21ին, Քաֆէի սը–րահին մէջ (մէթրօ Քաֆէ)։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի եկեղեցւոյ Կրթ. յանձնաժողո–վը շնորհակալութեամբ ստացած է հինգ հազար ֆրանք Պ. Գրիգոր Հայթայեանէ, Լեւոն Մոզեանի մահուան քառասունքին առթիւ։

×

Մարսէյլէն ընկեր Խաչիկ Մխիթարեան իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմի–տէին, Քրիստափոր ենթակոմիտէին եւ բոլոր ընկերներուն ու ամէն անոնց որոնք իր հօրը մահուան առթիւ իրենց ցաւակ–ցութիւնները յայտնած էին։

Այս առթիւ երեք հազար ֆրանք կը նը–ւիրէ Մշակոյթի Տան։ (Ստանալ «Յառա–ջ»էն) եւ երեք հազար ֆր. «Յառաջ»ին։

### ԲԱՑՈՒՄ

Հայ Աւետարանական Մկրտչական եկե–ղեցւոյ առաջին ժողովարանի։

6 Փլաս տը լա Ռոթոնտ, Սէն Ժերմ,

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3·30ին։

Պիտի խօսի Վ. Յ. ՀԵԼՎԱՃԵԱՆ։

Տեղւոյն հովիւը։



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue. 17 — PARIS (9e)

## ՄԵԾ ԵՒ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սե–րունդի «Սիամանթօ» խումբին կողմէ։

Այս Շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ, «Պէրիէ Միյէ»ի շքեղ սրահներուն մէջ։

Գեղարուեստական ճոխ բաժին։

Պիտի ըլլան երգեր, մեներգներ, խըմ–բերգներ, ժողովրդային խմբական պա–րեր եւ ուրիշ շարք մը հաճելի եւ սիրուն անակնկալներ։

ԸՆՏԻՐ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

ՄԱՍԷԼ ԼՈՒՎԻՐԷ

## ՄԱՐՍԷՅԼ

### ԱՐԾԻՒ ՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետր. 21, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս, Ալհամպրայի շքեղ սրահին մէջ։

Մասնակցութեամբ ծանօթ ղեկավար ՔԼՈՏ ՊԷՍԷի, իր մեծ նուագախումբով։ Ռատիօ Մոնթէ Քարլոյի եւ Անիմաթէօր ԷՏՄՈՈՆ ԹԱՅԷի։

Աթրաքսիոն, անակնկալներ եւ գօթիյօն խնամուած պիւֆէ։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ՝ «Արամ» խումբը, այս Կիրակի առաւօտեան ժամը 9·30ին։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը ստի–պողական է։ Կարեւոր օրակարգ։ Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէն իր կազմով։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30–ին, Քաֆէ Լիոնի վերնայարկը։ Խիստ կարեւոր օրակարգ։ Ընկերներուն ներկա–յութիւնը պարտաւորիչ է։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի «Քը–րիստափոր» խումբի ընկերները այս ե–րեքշաբթի, ժամը 21ին, 17 Րիւ Պլէօ։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռււ. Ռուբէն խումբի ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին, Մշակոյթի Տան մէջ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Վիէնի վարչութիւնը շը–նորհակալութեամբ ստացաւ երկու հազար ֆրանք Տիկին Մարթա Խաչատուրեանէ, իր ամուսնոյն Պ. Գրիգորի գործողու–թենէն ազատուելուն առթիւ։

Այրի Տիկին Գեղամ Ղազէրեան, Տէր եւ Տիկին Ներսէս Ալաճվերտեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Օննիկ Ղազէրեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յակոբ Նազարեան եւ զաւակները, Պ. Վարդան Ղազէրեան, Տէր եւ Տիկին Քլեման Գալայճեան եւ զաւակը, Այրի Տիկին Նուարդ Էթեէմէզեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Յովհաննէսեան, Մոմճեան, Գալայճեան, Սինանեան ընտանիքները, ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, եղբօր, հօրեղբօր, մօրեղբօր եւ ազգականին՝

ԳԵՂԱՄ ՂԱԶԷՐԵԱՆԻ

(Սարկաւագ, Փարիզի Հայոց եկեղեցին)

մահը, որ տեղի ունեցաւ Փետրուար 19-ին, 60 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս երեքշաբթի, ժամը երկուքին, Փարիզի Հայոց եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Պուա Քոլոմպի գերեզմանատունը :

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Վիէնէն ընկեր Աս. Քղէլեանէ հազար ֆրանք, ողբացեալ Ժիր. Խրիմեանի յիշատակին :

## ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵՆԷՆ ԹՈՇԱԿԻ ՅԱՏԿԱՑՈՒՄ ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՄԷՋ

ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ ազնուամեծար վարիչները Մուրատեան վարժարանի տեսչութեան առաջարկին ընդառաջ երթալով որոշած են 1959 – 1960ի դպրոցական տարեշրջանէն սկսեալ հինգ սան պահել հետեւեալ պայմաններով :

1.— Պատանին (11 – 12 տարեկան) պէտք է ըլլայ հայ չքաւոր ընտանիքի զաւակ, ուշիմ, աշխատասէր եւ բարեկիրթ :

2.— Զարգացումը պէտք է համապատասխանէ ֆրանսական երկրորդական վարժարանի վեցերորդ դասարանին :

3.— Թեկնածու չեն կրնար ըլլալ արդէն իսկ վարժարանս յաճախող աշակերտնե– րը :

4.— Սան մը որ չկարենայ անցնել տարեվերջի քննութիւնները կը կորսնցնէ ամէն իրաւունք :

5.— Ընտրութիւնները պիտի կատարուին վարժարանիս մէջ մրցումով եւ քննութեամբ, որ տեղի պիտի ունենայ յառաջիկայ Մայիս 18էն 24 օրերու ընթացքին, ժամը 15 – 17ին :

Կը պահանջուին դպրոցական վկայականներ :

Գրել Տեսչութեան.—

DIRECTION DU COLLÈGE ARMÈNIEN
26, RUE TROYON, SÈVRES - S. & O.



Imprimé sur les presses du Journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

# ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը

## ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Մարտ 7ին, Աիարոնեան Ակումբին մէջ :

### ՈՂԲ. Խ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ողբացեալ Խաչիկ Կարապետեանի (Պրիւսէլ) յիշատակին, Պ. Կ. Փօլատեան մէկ մէկ օրինակ Օրեր եւ ժամեր կը նուիրէ.—

1.— Պ. Եազուպեանի (Դամասկոս) :

2.— Պ. Գորոյեանի (Ուստըր) : Եւ մէկ մէկ տարեկան Հայ – Բոյժ կը նուիրէ.—

1.— Պ. Եազուպեանի (Դամասկոս) :

2.— Պ. Գորոյեանի (Ուստըր) :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ.Կ. Խաչի Փորթ տ'Իթալիի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Պ. Միհրդատ Ալեքսանեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի երկու հազար ֆրանք Տիկին Այտնլեանէ :

×

Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է հինգ հազար ֆրանք Տէր եւ Տիկին Մամուռեանէ, իրենց զաւկին ամուսնութեան առթիւ :

Նոյնպէս Տէր եւ Տիկին Ճընկըրտրեանէ հինգ հազար ֆրանք եւ հինգ հարիւր Ֆր. Տէր եւ Տիկին Խաղնէճեանէ :

×

Վահագն Յակոբեան եւ Յասմիկ Յակոբեան իրենց ջերմ շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց եւ ի մասնաւորի Պ. Քաջանի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին անդամուհիներուն, որոնք սգակից եղան իրենց վիշտին եւ ցաւակցութիւն յայտնեցին իրենց ողբացեալ կնոջ եւ մօր՝ ՍԱՆԴՈՒԽՏ ՅԱԿՈԲԵԱՆԻ մահուան առթիւ :

×

Պ. Ենովք Մելքոնեան, Տէր եւ Տիկին Արշաւիր Մելքոնեան եւ բոլոր պարագաները իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք ցաւակցութիւններ յայտնեցին իրենց ողբացեալ կնոջ եւ ազգականին՝ ԽԱԹՈՒՆ ՄԵԼՔՈՆԵԱՆԻ մահուան առթիւ :

×

Փարիզի Ազգատախնամի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները.— Այրի Տիկին Սօֆի Ակոբովիչ երկու հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Միհրդատ Ալթունեան երկու հազար, փոխան ծաղկեպսակի ողբացեալ Տիկին Սանդուխտ Յակոբեանի մահուան առթիւ :

Պ. Գէորգ Պաղրճեանէ՝ Արա Պարթեւեանի վերջին լոյս տեսած երկու սալիկը (Բէֆլէ տ'Արմէնի) հանգստեան տուներուն համար :

×

Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Գրիգոր Կարապետեանէ (նախկին մարսէյլաբնակ, այժմ Ամերիկա) քսան տոլար Ծնունդի առթիւ : Նոյնպէս շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Պարսամ Յակոբեանէ հազար ֆրանք, ինչպէս նաեւ հազար ֆրանք Տիկին Էքիզեանէ :



### ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԱՐՄՆԻՆ

կազմակերպած

ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍԸ

ՀԻՆԳՇԱԲԹԻ, ՄԱՐՏ 12ԻՆ

ժամը 14.30էն 18.30

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Վալանսի Հայ Ազգ. Միութեան ներկայ վարչութեան գործունէութեան շրջանը աւարտած ըլլալով՝ կոչ կ'ուղղուի Վալանսահայ գաղութին, ներկայ գտնուիլ ընդհ. անդամական ժողովին որ տեղի կ'ունենայ 28 Փետրուար, 1959 Շաբաթ երեկոյ ժամը 9ին Թատրոնի վերնայարկը, (Ֆուայէ տիւ Թէաթրը) : Օրակարգ՝ Ա) Բարոյական եւ նիւթական զեկոյց : Բ) Ընտրութիւն նոր վարչութեան :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի «Քրիստափոր» խումբի ընկերները այս եւ րեքշաբթի, ժամը 21ին, 17 Րիւ Պլէօ :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուս. Ռուբէն խումբի ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին, Մշակոյթի Տան մէջ:

ՊԱՆԵԷՕ – ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս հինգշաբթի ժամը 21ին ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ :

### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ

Կազմակերպուած Մարսէյլի Շրջ. վարչութեան կողմէ :

Շաբաթ, 28 Փետրուար, երեկոյեան ժամը 21ին, Նորմանտի շքեղ սրահին մէջ:

28 BLD. D'ATHÈNES, MARSEILLE

Գեղարուեստական խնամուած յայտագիր, երգ, արտասանութիւն, նուագ :

Անխտիր եւ սիրով կը հրաւիրուին Նոր Սերնդականները եւ համակիրները :

